Խոստիկեան, Մ. (1916) Ազգագրական նիւթեր Եզնիկի «Եղծ աղանդոց» երկի մէջ. Ազգագրական հանդէս, № 26. pp. 137-147.

# ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՆԻՒԹԵՐ

## ԵԶՆԻԿԻ „ԵՂԾ ԱՂԱՆԴՈՑ" ԵՐԿԻ ՄԷՋ

Մ. ԽՈՍՏԻԿԵԱՆ

*Հայոց գրականութեան ոսկեդարի, Ե. դարի պայծառ աստղերից է Եզնիկ Կողբացին։ Նրա գրքոյկը՝ «Եղծ աղանդոց» իրաւամբ բարձր է գնահատուած դասական ընտիր լեզուի ու ոճի և իմաստասիրական բովանդակութեան տեսակէտից։*

*Սակայն ազգագրական տեսակէտից էլ Եզնիկի այս գրքոյկը շատ գնահատելի է, որովհետև բաւական ազգագրական նիւթ է պարունակում իւր մէջ, յատկապէս 68—110 և 149—180 երեսներում*)։ Եզնիկի այս նիւթերը մասամբ օգտագործել են՝ Մ. Աբեղեան իւր «Der Armenische Volksglaube» գերմաներէն դիսերտացիայի մէջ (հրատ. 1899 թ.), և Հ. Ղ. Ալիշանը իւր «Հին հաւատք հայոց» աշխատութեան մէջ (Վենետիկ 1895)։ Բայց որովհետև վերոյիշեալ հեղինակները և ուրիշ նման նիւթերն ուսումնասիրողները մասամբ միայն օգտագործել են Եզնիկի այդ տեղեկութիւնները, և որովհետև այդ նիւթերը թէ Եզնիկի մէջ և թէ նրան ուսումնասիրողների գրուածքներում ցրուած են, մի տեղ չեն ամփոփուած, այդ պատճառով անհետաքրքիր չէր լինի հաւաքել և որոշ դասաւորութեամբ տալ «Ազգագրական հանդէսի» ընթերցողներին։*

*Յայտնի է, որ Եզնիկն այս գրքոյկը գրելիս՝ նպատակ է ունեցել Հայաստանում գոյութիւն ունեցող կամ հայերի վրայ որոշ ազդեցութիւն գործող հեթանոսական կրօնները, աղանդաւոր ուղղութիւններ ու հին ժողովրդական հաւատալիքները հերքել, ջրել,*

---

**) Ձեռքի տակ ունինք Վենետիկի հրատարակութիւնը՝ Եզնիկ. Եղծ Աղանդոց. Վենետիկ. ի ՌՄՀԵ։*

որպէսզի Հայաստանում արմատանայ պաշտօնական եկեղեցական դաւանանքը և կրօնական ճշմարտութիւնները։ Այս պատճառով էլ բնականաբար իւր գրքոյկի մէջ պիտի բերէր ի միջի այլոց նաև եկեղեցու կողմից խոտելի համարուած ժողովրդական հաւատալիքներ, աւելորդապաշտութիւններ կամ սնոտիապաշտութիւններ և աշխատէր դրանց հերքել, եղծել. դրա համար էլ Եզնիկի գրքոյկի մէջ ազգագրական նիւթերից առաջին տեղը պիտի բռնէին հաւատալիքները։

Դժբաղդաբար Եզնիկն առանձին գլուխ չի նուիրել հայ ժողովրդական հաւատալիքներին. եթէ այդպէս վարուած լինէր, այն ժամանակ մենք կունենայինք համեմատաբար աւելի ճոխ նիւթ այդ երևոյթի մասին։ Ինչպէս յայտնի է, նա իւր երկը բաժանել է չորս գլխի. Եղծ աղանդոց հեթանոսաց, Եղծ քէշին պարսից, Եղծ կրօնից Յունաց իմաստնոցն և Եղծ աղանդոյն Մարկիոնի։ Այս վերնագրերից երևում է, որ հայ ժողովրդական հաւատալիքներն ինքնուրոյն տեղ չեն բռնում. դրանք ցրիւ են տըրուած Ա. և Բ. մասերում 68—110 և 149—180։ Այստեղ թող թոյլ տրուի մեզ ասել, որ Եզնիկի գրքի ամենաարժէքաւոր մասերն էլ հէնց դրանք են, որովհետև անկասկած ինքնուրոյն են. այնինչ մնացածները՝ մանաւանդ Ա. գլխի մի աչքի ընկնող մասը, որը վերաբերում է հեթանոսաց կրօնների հերքման, հիւղէի վարդապետութեանը, ինչպէս և Մարկիոնի աղանդին՝ Դ. գլխում, մեծ մասամբ թարգմանութիւն են կամ քաղուածք Մեթոդիոս և Եպիփան եկեղեցական ջատագով հայրերի գրուածքներից, ինչպէս շատ գեղեցիկ կերպով ցոյց է տուել Հ. Գալեմքարեանը. Հանդէս Ամսօրեայ, 1893. էջ 289—293. 345—351. 359—66 և 1894 թ. էջ 6—1. 87—90. 271—78. 1896 թ. 270—273։

Եզնիկի ընթերցողը «Եղծ աղանդոց հեթանոսաց» վերնագիրը կրող գլխի մէջ կարող էր իրաւամբ ենթադրել, որ հեղինակն այստեղ պիտի խօսի հեթանոսական զանազան կրօնների մասին, որի մէջ փոքր տեղ չպիտի բռնէր նաև հայ հեթանոսական կրօնը, քանի որ այդ գիրքը մի հայ էր գրում և հայերի համար էր գրում։ Բայց դժբախտաբար հեղինակն հետևելով իւր աղբիւրներին՝ զբաղւում է այն հարցով, որ ապացուցանի. թէ «Հիւլէն, նիւթը իբրև երկրորդ արարչական սկզբունք գոյութիւն ունենայ չէր կարող։ Հիւղէի գոյութիւնը յոյն հեթանոսներն ընդունում էին, որպէս զի մի կերպ բացատրեն տիեզերքի մէջ եղած անկատարութիւնն ու չարիքը. իսկ թէ ինչպէս էին բացատրում հեթանոս հայերն այդ հարցը, յայտնի չէ։ Առհասարակ զարմանալի է, թէ ինչու Եզնիկը հայ հեթանոսական կրօնի մասին

ոչինչ չի խօսում։ Մի՞թէ V դարում հայ հեթանոսական պաշտօնական կրօնը Հայաստանում բոլորովին կորսուել էր, անազդեցիկ էր դարձել։ Նա բաւականանում է միայն մի երկու տեղ այն համոզումը յայտնել թէ՝ հեթանոսական բազմաստուածութիւնը արդիւնք է սատանայի, դեւերի խաբէութեանը։ Այսպէս էջ 150 գրում է «... Դեւք, ոչ երբէք զմարդիկ ի կռապաշտութիւն յօժարեցուցանէին և ոչ ի պէս պէս աղանդս փիլիսոփայից և հերձուածողաց և ոչ ի բա:խս բախտից և ոչ ճակատագրաց և ոչ կապելոց հրամանաց... Եւ զի դևաց գիւտ է կռապաշտութիւնն՝ վկայէ Դաւիթ...»։ Եւ որովհետև այսպէս է մտածում, այդ պատճառով պէտք է ընդունել, որ սատանայի կամ դեւերի հաւատը մեծ դեր է խաղում Եզնիկի աշխարհայեացքի մէջ։

Ա. Սատանան, դևեր, վիշապներ.— Ո՞րտեղից է վերցրել Եզնիկը Սատանայի գոյութեան հաւատը. անշուշտ ամենից առաջ ս. Գրքից. բայց նա անխուսափելիօրէն պէտք է ազդուէր նաև հայ ժողովրդական հաւատալիքների տուեալներից՝ սատանայի կամ դեւերի մասին։ Այս տեղից առաջ է գալիս դժուարութիւն որոշելու Եզնիկի մէջ, թէ ո՞րն է զուտ բիբլիական, ո՞րը ընդհանուր հեթանոսական և ո՞րը հայ ժողովրդական։ Սակայն ի նկատի ունենալով այն հանգամանքը, որ բիբլիական սատանան ինքը արդիւնք է հին քաղդէական, ասոր-բաբելական և մանաւանդ զրադաշտական կրօնների ազդեցութեան, որը խոր արմատներ էր ձգել նաև Հայաստանում, կը գանք այն եզրակացութեան, որ Եզնիկի սատանան նոյնքան հայ ժողովրդական է, որքան բիբլիական, թէպէտ տարբեր, առանձնայատուկ գծեր էլ պէտք է լինին երկուսի մէջ։

Սատանան ըմբռնուած է Եզնիկի մէջ իբրև Աստծուց ստեղծուած, բայց նրանից ապստամբած մի էակ. դա բիբլիական հասկացողութիւն է։ Հայկական հաւատալիքի մէջ սատանան պարսկականի նման ճանաչուած է իբրև Աստծուց անկախ և նրա դէմ մշտապէս կռիւ մղող չարութեան սկզբունք։ Սատանայ բառը, ինչպէս Եզնիկն իրաւամբ նկատում է, սեմական խօսք է. դա չարութեան հաւաքական անունն է. հայ ժողովրդական հաւատալիքի մէջ չարութեան ոգիները դեւեր են անուանւում։ Եզնիկի կարծիքով դեւերն անմարմին են, բնութեամբ նման հրեշտակների և մարդկանց ոգիների. հայ ժողովուրդը նրանց հողմեղէն, հրեղէն է համարում, ինչպէս էջ 91-ից տեսնում ենք «Զի եթէ ի բնութենէ հողմոյ և ի հրոյ էին...» Եզնիկը պարտք է համարում հերքել նոյն տեղում ժողովրդի այս կարծիքը, յայտնելով որ դրանք շնչի պէս թեթեւ և հողմի պէս արագ լինելու համար

են այդպէս անուանուած, որովհետև եթէ հողմեղէն և հրեղէն լինէին այն ժամանակ մարմնաւոր կը լինէին, այն ինչ հրեշտակները, դևեր և մարդկանց ոգիներն անմարմին են և բնութեամբ պարզ։ «Ասի և դև ոգի, այլ ոգի չար վասն աննենգանդութեան և ապստամբութեանն . . . . . այլ գիտեմք, եթէ այս հողմ է և հողմն՝ ոգի... և վասն տարածութեան և արագութեան կոչին հրեշտակք և դեք և ոգիք մարդկան ոգեղէնք, որ է հողմեղէնք» (էջ 91—92)։

Այս թեթև արագաթռիչ ոգիները համապատասխան այն տեղին, ուր նրանք բնակւում են կամ յայտնւում մարդկանց, դրան յարմար անուններ են կրում։ Այսպէս «Քանզի դեւաց է կերպարանս ցուցանել և մարդիկ ըստ կերպարանաց անուանս դնեն, որպէս յորժամ քաղաքք և գիւղք աւերեսցին, և անդ դեք ծնանիցեն և կեղծս կեղծս յայտնեսցին, և մարդկան ըստ կեղծեաց նոցա անուանս եդեալ զոմն՝ յուշկապարիկ, զոմն պարիկ, զոմն համբարու կոչիցեն» (էջ 97—98)։ Այսպէս գետերի մէջ բնակուողները Նհանգ են կոչւում, դաշտերին՝ շահապետը, ինչպէս երևում է հետևեալ տողերից. «Հարծեցուցանել, թէ և նհանգք ինչ իցեն գետոց և շահապետք վայրաց. և յետ դարձուցանել՝ ինքն (սատանան) կերպարանի կամ ի վիշապի կերպարանս, կամ ի նհանգի իմն և ի շահապետի...»։ Աւերակներում բնակւող դևերը յուշկապարիկ են անուանում, անտառներին՝ պարիկ կամ պայ, որը մի մարդուց է առաջացել, գետերին կամ ծովափերին՝ համբարու, ծովերին՝ իշացուլ կամ ծովացուլ, որը ծովից է առաջացել, ժայռերին՝ (?) առլէզ, որը շնից է առաջացել և որը պատերազմում քաջաբար ընկած հերոսին վէրքերը լիզելով առողջացնում է։ «...Իբրև զծովացուլն, զոր ի ծովէ ելեալ ասեն, և զպայն իմն ի մարդկանէ և զառալէզն՝ ի շանէ. և այն ոչ եթէ անձինք ինչ են, այլ անուանք զբանգտանաց և բաջաղանք մոլորելոց ատաց ի դիւաց...։ Ոչ երբեք ի մարդկանէ ելեալ պայն՝ եթէ առ երես աբարած իցէ, և ոչ ի ծովուց զծովացուլն ելեալ՝ եթէ ի ծովակս բնակիցէ . . . . և ոչ ի շանէ ինչ լեալ, եթէ ընդ աներևոյթ զօրութիւնս ինչ կեցցէ, և յորժամ վիրաւոր ոք անկեալ ի պատերազմի դնիցի թէ լիզիցէ և ողջացուցանիցէ, զոր արալէզն կոչեն. այլ ամենայն՝ առասպելք են և պառաւանց դրդջիւնք, և մանաւանդ թէ ի դիւաց մոլորութենէ։» էջ 98—99։

Այս հատուածից երևում է, որ հայ ժողովուրդը հաւատում էր, թէ Հայաստանի լեռները, ձորերը, գետերն ու ծովակները, անտառներն ու աւերակները դևերով, ոգիներով բնակուած են։ Նրանք ի բնէ ոչ չար են, ոչ բարի, այլ քմահաճոյ, հապիտ ոգի-

ներ են։ Առլեզներն պատերազմում ընկած հերոսներին են առողջացնում, այն ինչ նհանգը երբեմն կնոջ կերպարանք ընդունելով երբեմն ծովահորթ դառնալով․ լողորդին նախ դէպի ինքն է գրաւում, ապա բռնում ոտներից, քաշում ծովի խորքը և խեղդում։ «Զի եթէ էր ինչ նհանգ անձնաւոր, ոչ երբեմն ի կնոջ կերպարանս երեւէր, և երբեմն փոկ լինէր և լուղորդաց ընդ ոտս անկեալ հեղձուցանէր»։ (էջ 106)։

Եզնիկն ի հարկէ վերոյիշեալ անձնաւորեալ առանձին, ինքնուրոյն ոգիների գոյութեանը չի հաւատում. բայց սատանայի և դևերի գոյութիւնն ընդունում է և կարծում է, որ դևերը անմարմին են և անսերմն, ոչ մեռնել, նուազել և ոչ ծնուել, շատանալ կարող են։ «Այլ հրեշտակք և դևք ոչ յաւելուած ծննդեամբ առնուն և ոչ պակասութիւն մահուամբ, այլ որպէս հաստատեցան, նոյնպէս և նովին թուով կան առանց յաւելուածոյ և նուազութեան։» (էջ 102)։ Բայց այն հանգամանքից, որ Եզնիկը բանակռւում է ուզում հաստատել իւր ասածը, պէտք է եզրակացնել, որ ժողովուրդը ընդունում էր, որ նրանք, դևերը մարմնաւոր են. կարող են ոչնչանալ և պակասել, կամ ծնուել և շատանալ։ Կարող են ուզած ժամանակ իրենց տեսանելի մարմնեղէն բնութիւնը դարձնել անտեսանելի, կամ տարբեր ձևեր, դէմքեր, ընդունել, ուզած կերպարանքով հանդէս գալ։ «Եւ ոչ այլ ինչ արարած գոյ, որ կարիցէ ի կերպարանս կերպարանս լինել, որպէս զվիշապաց և զնհանգացն համբաւ են, այլ միայն հրեշտակք և դևք, որք կարող են զօդս գնդել և պաւղել և ազգի ազգի կերպարանս երեւեցուցանել։ Այլ և վիշապի կեղծս ի կեղծս լինեն...» (էջ 102 և 106)։ Նրանք կարող են ծնուել, շատանալ. մարդկանց և անասունների հետ սեռական յարաբերութեան մէջ մտնել և նոր նոր ճիւաղներ, ոգիներ առաջ բերել։ Այսպէս Եզնիկը լսել է, որ գիւղացիքն ասել են և պնդել «Այլ և վիճեալ եւս պնդեն ի բանիցն վերայ, թէ ի մերում գիւղ ծովացուլ զկով կործեաց, և զգոչիւն հանապազ մեք լսեմք ամենեքեան։ Եւ միւսն ասէ, զպայն իսկ իմ աչօք տեսեալ է» (էջ 99)։ Այսպէս հակառակ Եզնիկի, ժողովուրդը դևերին աւելի մարմնեղէն է մտածում, որոնք յարաբերութեան միջոցով կարող են առնել։ Իսկ նրանց ոչնչացնել կարող են միայն առանձին ուժով օժտուած մարդիկ՝ կախարդները, որոնք իրենք մի տեսակ դիւահար մոլեգնած մարդիկ են լինում, դևերի լեզուն հասկանալ, նրանց թոյլ կողմը ըմբռնել կարող են։ Նրանք կարող են դևերին իրենց հնազանդեցնել, ուր ուզենան՝ ուղարկել, ում մէջ ուզենան՝ մտցնել կամ ումից ուզենայ՝ դուրս հանել և կախարդական զօրութեամբ կապել, ոչընչացնել (էջ 85, 86)։

*Դևերի առանձին տեսակը վիշապներն են. իսկ Եզնիկի կարծիքով նոյն սատանան է, որ երբեմն օձի, վիշապի կերպարանքով է երևում, որպէս զի կարողանայ օձապաշտութիւնը հաստատել աշխարհում։ «Նոյնպէս զոր շահապետ վայրաց կոչեն, ոչ մերթ մարդ երևէր և մերթ օձ, որով և զօձապաշտութիւնն հնարեցաւ յաշխարհ մուծանել»։ Եզնիկը շատ է աշխատում վիշապ և օձ գաղափարները նոյնացնել ասելով «Եւ այլ ինչ ոչ են վիշապք՝ բայց կամ օձք մեծամեծք ցամաքայինք կամ ձկունք անարիք ծովականք, զորոց ասեն, թէ լեռնաբերձք և մեծամեծք են» (էջ 104)։ Այն ինչ ժողովուրդը հաւատում էր, որ վիշապները դևերի առանձին տեսակն են և առանձին կեանք, հակումներ և զբաղմունքներ ունեն։ Նրանք, օրինակ, մարդկանց նման որսի են գնում և մարդկանց նման նրանք էլ բնակութեան պալատներ ունեն։ Այս հաւատալիքը Եզնիկը հերքում է ասելով. «Եւ ոչ որսս երբէք որպէս մարդկան արարեալ են վիշապաց կամ առնեցին և ոչ տաճարք իբրև մարդկան են նոցա ի բնակութիւն»։ Նրանք շատ դիւցազուն թագաւոր մարդկանց որսացել և տարել են իրենց մօտ. «Եւ ոչ զոք ի թագաւորազգեաց և ի դիւցազանց ունեն կապեալ առ իւրեանս կենդանի» և կապած կենդանի պահում են։ Օրինակ Յունաստանում ասում էին թէ՝ դևերն Աղեքսանդրին կապած պահում են իրենց մօտ կենդանի։ Այսպէս այդ դև-վիշապները հայոց Արտաւազդ թագաւորին էլ շղթայել և պահում են։ Նա մինչև այժմ կենդանի ապրում է նրանց մօտ. բայց մի օր պիտի դուրս գայ և տիրի աշխարհին։ Ինչպէս հրեաները հաւատում էին, թէ Դաւթի սերնդից մի թագաւոր պիտի դուրս գայ և իրենց թագաւորութիւնը վերականգնի, այնպէս էլ հայերն են սպասում, թէ Արտաւազդը վիշապների ձեռից պիտի ազատուի և գայ հայոց փառաւոր թագաւորութիւնը վերանորոգի։ «Այլ որպէս զԱղեքսանդրէ խաբէին դևք՝ թէ կենդանի կայցէ, որոց ըստ Եգիպտական հնարողութեանն կապեալ արկեալ կախարդանօք զդև ի շիշ, կարծեցուցանէին, թէ Աղեքսանդրոս կենդանի իցէ և մահ խնդրիցէ... Նոյնպէս և մոլորութիւն դիւաց խաբեաց զդիւցապաշտս հայոց, եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ. և նա ելանելոց և ունելոց է զաշխարհս, և ի սնոտի յոյս կապեալ կան անհաւատք...» (էջ 104—105)։ Այստեղ ուշադրութեան արժանի է այն հանգամանքը, որ Արտաւազդն այստեղ ժողովրդական հաւատալիքի մէջ մի փառաւոր հերոս թագաւոր է հանդէս գալիս, որը՝ եթէ դևերից ազատուի ոչ թէ աշխարհ պիտի կործանի, ինչպէս Խորենացու մէջ է պատկերացուած, այլ ընդհակառակն նա պիտի վերականգնի Հայոց թագաւորութիւնը. այս յոյսը ժողովուրդն է կապել նրա հետ։*

Այս վիշապներն երբեմն յիրաւի օձի ձևով են երևում, երբեմն իբրև հսկայ մարդիկ։ Նրանք երբեմն ջորիներ, ուղտեր առաջ ձգած գալիս են և գիւղացու կալից նրա աշխատանքը գողանում, տանում են։ Այսպէս էջ 103 կարդում ենք. «Եւ ոչ վիշապք զտոհմականս արգեանց կրեն, և ոչ գրաստ գոյ նոցա, եթէ զարդիւնս ի կալոց ուրեք կրիցեն. և ի զուր է կա՛լն կա՛լն ասել ումեք ի կալս և ոչ ա՛ռ ա՛ռ»։ Այնպէս որ այն գիւղացին, որ տեսնում է, թէ վիշապները եկել են կալից գողանալու «կա՛լ, կա՛լ» պիտի ասէր և ոչ «ա՛ռ, ա՛ռ», որ չլինի բոլոր հացահատիկը տանեն։ Նրանք, այդ վիշապները երբեմն բնակութիւններից հեռու, ամայի վայրերում ցանցեր են ձգում և սպառազինուած, որսի դուրս եկած ձիաւոր մարդկանց նման ընկնում են որսի յետևից։ «Եթէ ի դաշտս երագազա՛ք ձգիցեն և հեծեալք իբրև զմարդիկ զհետ երէոց արշաւիցեն, կեղծիք դիւաց են և ոչ ճշմարտութիւն ինչ իրացն (էջ 107)։

Գոյութիւն ունին մի տեսակ բարի եզներ, որոնք չար վիշապներին քաշում, հանում, բարձրացնում են վեր, որպէս զի մարդկանց կամ անասուններին շատ վնաս չտան։ Մ. Աբեղեանը իր վերոյիշեալ աշխատութեան մէջ այս հաւատալիքում տեսնում է իրաւամբ պտուտկաւոր քամու կամ վիշապ-քամու ժողովրդական պատկերացումը։ Այդ վիշապների հայեացքն անգամ բաւական է, որ մարդ կամ անասուն ոչնչանան. և երբ այդպիսիներից ջրհորումն են գտնւում, մարդիկ ճրագ են վերցնում և իջնում նրանց բռնելու, որովհետև եթէ օձը ճրագ տեսնի, էլ մարդուն վնասել չի կարող։ «Եւս եթէ բառնայցի ի վեր այնպիսի վիշապն, ոչ եթէ եզամբք ինչ անուանելովք... զի մի շոգին մարդոց կամ անասնոց մեղանչիցէ. որպէս որ բասիլիկոսն կոչի ազգ ինչ օձից՝ հայելով միայն սատակէ մարդ կամ զանասուն, ուստի յորժամ՝ ի ջրհորս գտանիցի ճրագ առեալ իջանեն ի ներքս՝ զի հայեցեալ ընդ ճրագն ոչ մեղանչիցէ մարդոյն օձն» (էջ 107)։

Վիշապները համարձակւում են մինչև իսկ մարդու մէջ մըտնել և այնտեղ բնակուել։ Այն մարդը, որի մէջ մտնում է օձ-վիշապը, դիւահար է դառնում. և երբ նա գչում ու ճչում է, այդ իսկապէս մարդու մէջ մտած օձն է, որ ֆշշում է զայրացած։ «Եւ ոչ ի մարդ իբրև զդև մտանէ վիշապն, որպէս ոմանք էշջելով դիւահարին կարծեցին...»։

Բայց ոչ միայն ընկնաւորութիւնը, թալանալը, ցնորելը, զառանցանքը և լուսնոտութիւնն են համարում վիշապ-դևի ներկայութեան նշանը հիւանդի մէջ, այլ և շատ սովորական և ամենօրեայ երևոյթները. օրինակ՝ աչք խաղալը, որ նոր բան կամ

բարեկամի տեսնելու նշան է համարւում, մարմնի անդամների միս խաղալը, որ նշան է կամ ձի նստելուն, կամ նոր շոր հագնելուն, բարեկամի պատահելուն կամ ծեծ ուտելուն. ոտքի կամ ձեռքի ծակելը, քորուելը, որը ազդանշան է ճանապարհ գնալուն, կամ անձրև գալուն, կամ փող ստանալուն կամ տալուն։ Նոյնպէս վիշապ-դևի ազդեցութեանն են վերագրւում փնչացնելը, լեզուի կծելը, ականջի կանչելը, կոկորդի մէջ ծակոց զգալը, յօրանջելը, ձիգ ու պարզ լինելը, յոգւոց հանելը, որը նշան է, թէ մէկն իրեն յիշում է, սրսփալը ևն, ևն. (Տես 175—178 էջ)։

Այս բոլորից յետոյ բնական է, որ երազն էլ ոգիների գործը համարուի։ Երազում դևը կնոջ կերպարանքով երևում է տղամարդուն և տղամարդու կերպարանքով կնոջը և նրանց յանցանքի, երազխաբութեան պատճառ դառնում։ Դևը կարող է իգական և արական լինել և համապատասխան սեռական անդամներ ունենալ. կնոջ կամ տղամարդուն երազում երևալ, նրանց սեռական անդամները գրգռել և յարաբերութիւն ունենալ նրանց հետ։ Երբեմն այնպէս է թւում, թէ դևը փայտից կամ սրից վախենում է, բայց նա ամենից շատ Տիրոջ անունից է սարսափում. բաւական է Տիրոջ անունը տալ, և նա կը քաշուի (Տես էջ 173—175)։

*Աստղագիտութիւն եւ ճակատագրի հաւատ.*— Հայ ժողովրդի տիեզերագրական սովորական հասկացողութիւնն աշխարհի մասին շատ պարզ է։ Տիեզերքը նրա համար մի տուն է, որի առաստաղից կախուած են երկու ջահ. մեծ ջահն արևն է, փոքրը՝ լուսինը. այնուհետև կան էլի անթիւ փոքր լոյսեր՝ զարդարանքի համար հաստատուած առաստաղին։ Բայց այս գիտութիւնը ժողովրդի հաւատին, երևակայութեանը բաւարարութիւն չի տալիս, և նա որ իւր երևակայութեամբ շնչաւորել է լեռները, դաշտերը, ծովերը և մինչև անգամ իր տան, ջրհորի բոլոր անկիւնները, պիտի շնչաւորէր նաև արևն ու լուսին ու բոլոր աստղերը։

Եզնիկի մէջ, ուր զրադաշտական կրօնի մասին է խօսքը, արևն ու լուսին ներկայանում են իբրև կենդանի էակներ։ Պարսկական առասպելի համաձայն՝ Որմիզդը նախ բեղմնաւորել է իւր մօրը և ծնել է արևին, ապա քրոջը, և ծնել է լուսնին։ Մի այլ առասպելի համաձայն Որմիզդ և Արհմն ճաշի են նստած լինում, մինչ նրանց որդիները նրանց առաջ մենամարտում են։ Այդ ժամանակը նրանց մէջ կռիւ է առաջ գալիս. որդիների կռւին հայրերն էլ են խառնւում. վերջը որոշում են իրենց վէճը յանձնել մի դատաւորի. բայց որովհետև դեռ ոչ ոք չէր ստեղծուած, այդ պատճառով նրանք միացեալ ուժով ստեղծում են արևին, որ լինի իրենց դատաւորը (էջ 141)։ Եզնիկը կարծում է, որ իգասէր

պարսիկները միայն կարող են այսպիսի առասպելներ ստեղծել. բայց արդեօք այս առասպելները նաև Հայաստանում տարածուած չէի՞ն։ Յայտնի է, որ հեթանոս հայերը լուսինն ու արևը՝ իբրև անձնաւորեալ էակների՝ աստուածների՝ պաշտել են։ Նոյն իսկ մեր ժամանակում ժողովրդական հաւատալիքի մէջ արևն ու լուսինը հանդէս են գալիս իբրև քոյր ու եղբայր։ Արևը մեծ քոյրն է, իսկ լուսինը փոքր եղբայրը։ Եզնիկի մի հատուածից երևում է, որ Ե. դարի հայերը լուսինն էլ էգ կենդանակերպ էին համարում, որովհետև լուսնի ժամանակ առ ժամանակ կարմիր արնագոյն կերպարանք ստանալուց հետևցնում էին, թէ նա մի էգ դև-վիշապ է. և կախարդները կարող էին հմայութեամբ լուսինն իջեցնել մի կալի մէջ և կաթնատու անասունի նման կթել։ «Որպէս կախարդաց տեսեալ... զլուսնոյն արիւնագոյն լինելոյ զկերպարանս, դևի նմանել լուսնի բարբանջեն... թէ ի կալ մի փոքրիկ ամփոփիցի և կթիցի անասուն»։

Յամենայն դէպս հաւատալիքի մէջ լուսինն ու արևը մի մօր զաւակներ են ներկայանում։ Բայց ո՞վ է եղել նրանց մայրը․ հայ հեթանոսական կրօնից յայտնի չէ. կարող է պատահել, որ հեթանոս հայերն էլ պարսիկների նման բոլոր աստուածների և աստուածուհիների ծնողը Զրուան կամ Ժամանակը համարէին։ Թերևս այս կերպով բացատրուի այն՝ որ ժողովրդական հաւատալիքով մարդկանց բախտը և ճակատագիրը կապուած և կախուած է համարում երկնային լուսաւորներից։ Ե. դարի հայ ժողովրդի այս աստղագիտութեան և ճակատագրի հաւատալիքի դէմ է կռւում Եզնիկը՝ գրելով «Դուք ոչ երբէք զմարդիկ ի կռապաշտութիւն յօժարեցուցանէին... ոչ ի բաշխս բախտից և ոչ ի ճակատագրաց և ոչ ի կաղելոց հրամանաց, ոչ ընդ աստղս պշուցանել, թէ նոքա ինչ իցեն պատճառք բախտաւորութեան և չուառութեան» (էջ150)։ Աստղերը կենդանի, Զգայուն էակներ են. մարդկանց ծնունդն ու մահը, բախտն ու անբախտութիւնը նրանք են սահմանում. ինչպէս որ որոշում են, այնպէս էլ կատարւում է. չի կարող ծնունդը նրանց սահմանածից առաջ կամ յետ ընկնել և կամ մահը այլ կերպ լինել կամ ուշանալ։ Այսպէս վկայում է Եզնիկը «Ջծննդոց պատճառս և զմահուանց յաստեղաց իբրև ի կենդանեաց դնեն. որպէս թէ յորժամ ծնանիցեն, անդէն և մահուանքն իւրաքանչիւր ուրուք անվրէպ սահմանիցեն. և ըստ այնմ ոչ յառաջել ումեք մեռանել հնար իցէ և ոչ յամենալ» (154 էջ) և կամ «Եւ ձեր իցէ այն, զոր ասենն, եթէ որ ինչ ի ճակատագրին գրեալ է հրամանացն, այնմ չէ հնար վրիպել. այլ որ փառաւորն գրեցաւ՝ փառաւոր է, և որ չուառն չուառ. և ուր հրամանքն իցեն և յումէ

հրամանքն ըստ այնմ և մեռանին. և վրիպել չէ հնար ի սահմանելոյ հրամանէն» (էջ 161)։

Նայած որ աստղը, որ աստեղատունն է հանդիպում, նոյն ժամանակում ծնուածները համապատասխան բախտ են ունենում։ Եթէ Առիւծը լինի աստեղատնում, ով որ ծնուի, թագաւոր կը դառնայ, ի. կ. եթէ Եզն լինի՝ ծնուողը հզօր և բարեբաստիկ կը լինի. իսկ եթէ Խոյը լինի՝ ծնուողը մեծատուն կը դառնայ, իսկ եթէ Կարիճ լինի, այն ժամանակ ծնուողը չար և մեղաւոր կը լինի։ Իսկ եթէ Կռոնոսն աստեղատուն մտնի՝ թագաւոր պիտի մեռնի։ Ահա գլխաւորապէս սրանք և էլի ուրիշ կենդանակերպները՝ աստղերը որոշում են մարդկանց բոլորի բախտը։ Ու այդ է հաստատում Եզնիկը հետևեալ տողերով. «Դարձեալ բախտաւորութեանց և չուառութեանց զաստեղս դնեն պատճառս, որպէս թէ աստեղատունք ինչ իցեն և ըստ դիպելոյ աստեղաց յաստեղատունսն՝ նոյնպիսիք և ծնունդն լինիցին։ Մինչդեռ առիւծն, ասեն, յաստեղատանն իցէ՝ և ծնանիցի ոք, թագաւոր լինելոց է. և մինչդեռ եզն է՝ և ծնանիցի ոք, հզօր և բարենշան գալոց է. մինչդեռ Խոյն է՝ և ծնանիցի ոք, մեծատուն լինելոց, և որպէս Նայն թաւ և ասուեղ է, և յորժամ կարիճն է և ծնանիցի ոք, չար և մեղանչական լինելոց է..... Որպէս թէ յորժամ Կռոնոս յաստեղատունն մտանիցէ, թագաւոր մեռանի...» էջ 155—156. Այս՝ հաւատալիքի դէմ պայքարում է Եզնիկը, բայց նա էլ ընդունում է ժողովրդի հետ, թէ աստղերից և աստեղակերպներից է կախուած ցուրտն ու տաքը։ Որ լուսինն առհասարակ երկրի խոնաւութեան պատճառ է և ինքն էլ խոնաւ է, դա այն ժամանակուայ ժողովրդական աշխարհայեացքի և գիտութեան մէջ ընդունուած էր. դրա համար լուսինը խոնաւական է կոչւում։ Բայց արևն էլ է խոնաւ համարւում, որովհետև ծովից է դուրս գալիս և ծագելու ժամանակ ցօղ է թողնում աշխարհի վրայ։ Նա աղջիկ-արևը երեկոյեան գնում է հանգչում իր մօր ծոցը, առաւօտեան կողմը ծովի մէջ լողանում, մաքրւում, ապա դուրս է գալիս իր շրջանն անելու։

*Ժողովրդական բժշկութիւն.*— Մի քիչ էլ ժողովրդական բժշկութեան վերաբերեալ նիւթեր ենք գտնում, որոնք կրում են հատուկտոր ու պատահական բնոյթ։

Եզնիկն իր Ա. գլխում ի միջի այլոց ուզում է ապացուցանել, որ աշխարհումս ի բնէ չար ոչինչ չկայ. որ ամենաչար բանն էլ կարող է օգտակար լինել։ Օրինակ. օձից աւելի չար գազան չկայ, բայց բժիշկները կարող են նրանից թերիակէ-դեղթափ պատրաստել, որը թոյների սպանիչ է և դեռ տեղը չհասած՝ իսկոյն բուժում է։ «Զինչ չար՝ քան զօձն կայցէ և ի նմանէ թերիակէ, և ի սպանող դեղոցն,

որք ի ննդութենէ մարդկան կազմեցան, չև հասուցեալ և անդէն բուժէս (էջ 63)։

Շատ չար կենդանիների մորթին մեծ բարիք է մեզ համար, իսկ նրանցից մի քանիսի ճրագուից դեղեր կարելի է պատրաստել։ Երբեմն էլ ընդհանրապէս օգտակար կենդանիները կարող են մեզ վնասել։ Օրինակ ցլու միսն ուտելն առողջարար է. այն ինչ արիւնը թոյն է. խմողը կը մեռնի։ Նոյն բանը կարելի է նկատել բոյսերի մէջ։ Մանրագորոնը, եթէ մէկը առանձին ՝ ուտի, սպանիչ է. խառնելով ուրիշ արմատների հետ՝ քնահատների քունն է բերում. կամ հազարը, եթէ մէկը տաք ժամանակ ուտի, կը զովանայ, նա փորի ջերմը կը փարատի, իսկ եթէ հով ժամանակ ուտեն, կը վնասի. իսկ եթէ նրա ջուրը քամած, զտած մէկը խմի, կը մեռնի. ապա եթէ մէկը նրա սերմը աղայ և խմի, սեռական ոյժից կ՚ընկնի։ Այսպէս էլ կանեփուկ թուփի սերմը դեղ է և կիրքը սանձահարելու ոյժ ունի. իսկ մոլեխինդն առանձին վերցրած կարող է մահացնել, բայց բժիշկները կարող են նրա շնորհիւ հնացած մաղձը ոչնչացնել։ Կաղանչանան կոչուած բոյսը առանձին գործածուած, մահաբեր թոյն է, ուրիշ դեղերի հետ խառնելու դէպքում մաղձի դէմ շատ լաւ ներգործութիւն է ունենում։ (Տես 66—67)։

Անշուշտ ժողովրդական բժշկութեան մի տեսակն է նաև կախարդների կախարդական միջոցներով առաջ բերած բժշկութիւնը։ Նրանք փորձում էին կախարդական հնարքներով հիւանդի մէջ մտած դևին, չար ոգուն կապել, կամ դուրս հանել, որի ժամանակ հիւանդին շատ էին չարչարում. դժբախտաբար Եզնիկի մէջ միայն մութ ակնարկներ կան այդ մասին (Տես էջ 85)։

